— «Մէկ կողմէ Մարսէյլի մաճափորձին եւ անոր հետեւանքներու ազդեցութեան տակ, միւս կողմէ գործազրկութեան աճման պատճառով, խմբական արտաքսումներ կը կատարուին առանց պայմանաժամի, առանց բացատրութեան: Եթէ Ապահովութեան Տնօրէնութիւնը թերութիւններ ունի, արդար չէ որ քաղաքական յանցաւորները կրեն անոնց պատիժը: Շատ աննշան է թիւը այն փախստականներուն որ օրինական իրաւունք ստացած են Ֆրանսայի մէջ աշխատելու: 13,000 խնդրագիրներէ 500ը միայն ընդունուած են: ԱՊԱՍՏԱՆԻ ԻՐԱՒՈՒՆՔԸ ՊԷՏՔ Է ԱՆԲԱԺԱՆ ԸԼԼԱՑ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԻՐԱՒՈՒՆՔԷՆ: Ամէնէն արժանաւորները եւ ամէնէն հերոսականները անոնք չե՞ն որ ապրուստի միջոց չունին: Մինչեւ հիմա, Ֆրանսա վեհանձնութեան օրինակ հանդիսացած էր այս հարցին մէջ: Հիւրընկալութեան փառաւոր աւանդութիւն մը կար մեր մէջ: Անհրաժեշտ է որ կառավարութիւնը յարգել տայ զայն»:

## Աշխատանքի նախարարին յայտարարութիւնները օտար աշխատաւորներու մասին

Երեսփ. Ժողովի աջի օրուան նիստին մէջ, երբ վերջացան աշխատանքի նախարարութեան նիւթացոյցին վիճաբանութիւնները, նախարար Պ. Ժաքիէ հետեւեալ յայտարարութիւններն ըրաւ.

— Մի կարծէք թէ մինչեւ հիմա բան մը չէ եղած: 1930ին ունէինք 1 միլիոն 285,000 օտար աշխատաւորներ, 1931ին այս թիւը իջած էր 1,144,000ի, 1932ին՝ 910,000ի, եւ վերջապէս 1934 յունիս 30ին՝ 814,000ի: Անշուշտ շատ է տակաւին, բայց այստեղ կանգ չպիտի առնենք: Աշխատանքի նախարարը օրէնքով արտօնուած է հրամանագիրներով ճշդելու օտար աշխատաւորներու առ հարիւր համեմատութիւնը՝ իւրաքանչիւր ճարտարարուեստի համար: Այդ հրամանագիրները կրնան որոշուիլ ի պաշտօնէ կամ բանուորական եւ գործատիրական կազմակերպութեանց պահանջին վրայ: Ես վճռած եմ իմ իրաւասութեամբ այդպիսի հրամանագիրներ հանել, երբ համեմատութիւնը կ'անցնի 10 առ հարիւրը եւ վերաքննել մինչեւ հիմա հրատարակուած 72 հրամանագիրներ: Այսուհետեւ որ եւ է նոր արտօնագիր չպիտի տրուի օտար բանուորներու, իսկ հին արտօնագիրները պիտի նորոգուին միայն առ առաւելն 11 ամսուան համար, պայմանաւ որ օտար բանուորը Ֆրանսա բնակած ըլլայ երկու տարիէ ի վեր: Այս առթիւ նկատի պիտի առնուին կարգ մը բացառիկ կացութիւններ: Օտար բանուորներու աստիճանական հեռացումը միայն մէկ մասն է ամբողջական ծրագրի մը որ կը նախատեսէ երկու միջոցներ,— սահմանափակել մատուցումը եւ աւելցնել խնդրանքը: Առաջին տնօրէնութեան առթիւ, նկատի ունեցէք հետեւեալ թուանշանները,— Ֆրանսայի մէջ կան 814,000 օտար բանուորներ, կան նաեւ 774,000 բանուորներ՝ 60 տարեկանէն վեր եւ 805,000 բանուորուհիներ: Բաղձալի չէ՞ որ աշխատանքը աւելի Ֆրանսացիներուն ապահովուի քան օտարներուն, աւելի երիտասարդներուն քան ծերերուն, աւելի այրերուն քան կիներուն (բողոքներ եւ ընդմիջումներ): Կը խորհինք նաեւ 13էն 14ի բարձրացնել բանուոր պատանիներու տարիքը: Ասով գործ պիտի բացուի 50,000 այրերու»:

—— · ——

ՔԱՋ ՕԴԱՆԱՒՈՐԴՈՒՀԻ մը, Օր. Էլէն Պուչէ, 26 տարեկան, որ աշխարհի արագութեան մրցանիշը շահած էր իբրեւ կին, զոհ գնաց ահաւոր արկածի մը, Փարիզէն քանի մը քիլոմեթր հեռու, Կույանքուրի անտառին մէջ: Փորձ մը կատարելու վրայ էր, երբ օդանաւը գետին տապալեցաւ ահռելի ուժգնութեամբ, ջախջախելով հերոսուհին:

ՓԱՐԻԶԻ ՄԱՔՐԱԳՈՐԾՈՒՄԸ կը շարունակուի ամէն օր: Աջի օր ոստիկանութիւնը կարգ մը սրճարաններ եւ կապելաներ կոխելով, հարցաքննեց 30 հոգի, որոնց 8ը վար գրուեցան զանազան յանցանքներու համար: Երկու օտարականներ որոնք հաստատութեան մը մէջ կը ծառայէին առանց աշխատանքի արտօնագիր ունենալու, դատի պիտի քաշուին:

ԵԳԻՊՏՈՍԻ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ ջնջուեցաւ եւ խորհրդարանը լուծուեցաւ արքայական հրամանագրով: Վարչապետ Նէսիմ փաշա դիկտատորական լիազօրութիւններ ստացաւ:

ԸՍՄԷԹ ՓԱՇԱ ՊԵՐԼԻՆ կը սպասուի այսօր: Թրքական դեսպանը հացկերոյթ մը սարքած է, որուն ներկայ պիտի ըլլան խորհրդային դեսպանը եւ ուրիշ բազմաթիւ հիւրեր:

ԳԱՂՏՆԻ ՈՍՏԻԿԱՆ ՊՕՆԻ, որ անուանարկութեան դատ բացած էր «Կոէնկուառ» շաբաթաթերթին դէմ, 200,000 ֆրանք հատուցում պահանջելով, կորսնցուց դատը: Այս առթիւ ընդհ. դատախազը յանդիմանութիւն մըն ալ ուղղեց իրեն, խրատելով որ տեղը ծանր նստի:

ԴԷՊԻ ՄՈՍԿՈՒԱ ճամբայ ելաւ առեւտրական նախարարը, Պ. Մառշանտօ, բանակցութիւններ կատարելու համար: 1934ի համաձայնութենէն ի վեր, Ֆրանսայի առեւտրական փոխանակութիւնները 40 միլիոնէն, բարձրացած են 250 միլիոնի:

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

### Փարիզ

ՓԱՐԻԶԻ «Եգիպտացի» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր շրջանի ընկերները, 4 դեկտեմբեր, Երեքշաբթի երեկոյ, ժամը 8.30ին, 32, Ave. des Gobelinsի վերնայարկը: Կարեւոր օրակարգ:

ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Վալանսի Քրիստափոր ենթակոմիտէի կողմէ

Այսօր Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին, Քաֆէ Լէսթի վերնայարկը

Կը խօսի՝ ընկ. ԱՇՈՏ ԱՐԾՐՈՒՆԻ

Նիւթ՝ Հայ կեանքը, ներկայ քաղաքական կացութիւնը եւ Հ. Յ. Դաշնակցութեան դերը: *Մուտքը ազատ է*

ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ – ԹԷՅԱՍԵՂԱՆ

Յ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

9 Դեկտեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Ֆլօրիա ճաշարանին վերնայարկը, 61, Rue Mr. le Prince, Փարիզ (6):

Կը նախագահէ՝ ՏԻԿ. ՇԱՀԼԱՄԵԱՆ

Կը խօսի՝ ՏԻԿԻՆ ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

Նիւթ՝ Հայ ընտանիքը երկրի մէջ եւ այստեղ:

Կը հրաւիրուին անդամները, անդամուհիները եւ փափաքողները:

Մուտք՝ 3 ֆրանք:

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՎԷՆՍԷՆԻ Մ. ՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

*16 Դեկտեմբեր կիր. կէս օրէ վերջ ժամը 3էն մինչեւ կէս գիշեր*

**Salle JEAN GOUJONի մէջ**

**8, rue Jean Goujon. Paris.** Մէթրօ՝ **Champs Elysées**

Արքաքսիոն Օր. Gisèle Aubryի կողմէ (Ֆօլի Պերժերէ)

Ընտիր Ճազ–Պանտ: կը մասնակցի ԱԼԻՍ նուագախումբը:

Ճոխ եւ դիւրամատչելի պիւֆէ  Գին՝ 10 ֆրանք:

## ԽՄԲԵՐԳԻՉՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Հակառակ իր աշակերտներու ստուարացման եւ քօնսէրներու մասնակցութեան՝

**Դաշնակի ուսուցչուհի Օր. ՃԱՄՊԱԶ**

**61, Rue de Flandre, Paris (19)**

դասընթացք մը բացած է խմբերգիչներու համար:

**Ամիսը՝ 15 ֆրանք:**



ՊԱՐԱՆՑԻԿ – ԹԷՅԱՍԵՂԱՆ

Յ. Կ. Խաչի Առնուվիլի մասնաճիւղին Պարանցիկ Թէյասեղանը, 2 դեկտեմբեր, կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3 — 8, Salle Galmansի սրահին մէջ:

*Մուտք՝ 5 ֆրանք, անդործներու եւ կիներու համար 3 ֆրանք:*



Le Gérant: H. STEPHAN
17 Rue Damesme PARIS    Imprimerie A. DER (AGOPIAN)

կայ պաշտօնական գործողութեանց մէջ ալ պայ եւ պայան գործածելու։ Ներքին գործավարը պատասխանեց.
— Ժողովրդավարութեան սկզբունք-ներուն հետ անհաշտելի է որ Թուր-քերը այդ տեսակ տիտղոսներ կրեն օ-րէնքներու, վճռագրերու մէջ եւ դա-տարաններու առջեւ։ Բայց, իբրեւ սո-վորութեան հետեւանք, եթէ հարկ ըլ-լայ բառ մը գործածել ընթացիկ կեանքի մէջ, օրինակ կանչել անծա-նօթ մէկը, փոխանակ տարբեր ձայներ հանելու, կարելի է պայ բառը գոր-ծածել։

Գալով արտասահմանի, մեզի հա-մար անկարելի է արգիլել որ օտար երկիրներ գացող Թուրքերը չկոչուին կօսփօթ-իմ, մէսիօ, միսթըր, ֆիրիօս, աէյտի եւայլն»։

Օտար չքանչաններու խնդրին անդ-րադառնալով, Շիւքրիւ Գայա ըսաւ. «Կարելի չէ մերժել զանոնք։ Օրինակ, տեղ մը գացիք ուր հաւաքուած ան-ձերուն մէկ մէկ նշան կը տրուի իբրեւ յիշատակ։ Արդ, կարելի չէ «ես չեմ առներ» ըսել։ Կ'առնես, բայց իբրեւ յիշատակ կը պահես։ Ասոնք կրնան պատահիլ, ինչպէս անցեալները պա-տահած է մեր մէկ ընկերոջ։ Մերժել՝ կը նշանակէ վիրաւորել տուողը։ Ասի-կա մասնաւորաբար դեսպաններուն համար կարեւոր է։ Եթէ նշանը ջըն-ջենք, ուրիշ բան մը կուտան»։

— Ի՞նչ կրնայ ըլլալ, հարցուցին ո-մանք։ — Իբրեւ յիշատակ, նուէր մը կուտան, պատասխանեց։

# ԱՐԵՒԵԼԵԱՆ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ ՀԱՅԿԱԿԱՆ ԱՐԻՒՆՈՏ ԴԷՊՔԵՐԸ

## ԱՊՏԻԼ ՀԱՄԻՏ ԱՇԽԱՏԵՑԱՒ ԱՐԱԳՕՐԷՆ ԱՌԱՋՔՆ ԱՌՆԵԼ ԴԷՊՔԵՐՈՒՆ, ԲԱՅՑ ԵՂԱԾԸ ԵՂԱՒ ԵՒ ՇԱՏ ԱՐԻՒՆ ՀՈՍԵՑԱՒ

Պոլսոյ հայկական դէպքերէն յե-տոյ, 1895 հոկտ. 20ին, Արեւելեան վեց նահանգներու համար պատրաս-տուած բարենորոգումները գործա-դրելու ժամանակ չեղած, սարսափելի լուրեր առնուեցան թէ Արեւելքի մէջ իսլամներու եւ Հայերու միջեւ ընդ-հարումներու պատրաստութիւններ կ'ըլլան, եւ թէ Տրապիզոնի ու Էրզ-րումի մէջ ջարդեր սկսած են։

Ընդհ. քննիչ Շաքիր փաշա, Եըլտը-…

Պոլսոյ մէջ։ Եւրոպան յուզման մատ-նելու համար, այս չարագործները, առանց վախնալու Աստուծմէ, անմեղ Հայեր զոհ կուտային։

Այս հեռագիրը կարդալով, Ապտիւլ Համիտ շատ զայրացաւ եւ հետեւեալ հեռագիրը ղրկել տուաւ Շաքիր փա-շայի. «Այդ զառանցանքները այնպիսի բաներ են, որոնց տարածումը կա-տարուելէն աւելի վնասակար է։ Հե-տեւաբար այդ զառանցանքները գործ-…

(*) Հաստատուեցաւ թէ Դրօշակ եւ Դաշնակ կոմիտէները էին որ այս զը-րոյցները այնքան ճարտարութեամբ տարածած էին Անատոլուի եւ նոյնիսկ …

…տոսարաններու տեղեկագրին համա-ձայն սպաննուածներու թիւը 18.000էն աւելի է, իսկ մեր քննութեանց համա-ձայն՝ 12 հազար. սպանութիւնները …

ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

## Տիկնանց Կ. Խաչը

Փարիզի Հայ Տիկնանց Միութեան Պետ. Հայ Կարմիր Խաչի օգնութեան մարմինը ցարդ իր աշխատանքները կեդրոնացուցած է Փարիզի շրջանին մէջ։ Հակառակ ատոր, յաջողած է ունենալ բեղնաւոր գործունէութիւն մը՝ երկու ճակտի վրայ։

Խորհրդային Հայաստանի պետա-կան Կ. Խաչին ղրկած է մեծաքանակ դեղեր, վիրաբուժական գործիքներ եւ գիտական գիրքեր ու հանդէսներ։

Գործօն կերպով մասնացած է այն բոլոր ձեռնարկներուն, որ կատար-ուած են ի նպաստ մեր վերածնող հայրենիքի վերելքին ու բարգաւա-ճումին։

Իսկ այստեղ, օգնած է յղի կիներու, նորածիններու եւ տղայոց։ Ամէն ջանք թափած է, ժողովրդականացնելու համար բժշկական գիտելիքները։ Վերջապէս, տարիներէ ի վեր հաս-…

ՄԱՄՈՒԼ

## ՀԱՅՐԵՆԻՔԸ ԵՒ ԻՐ «ԲԱՐԵԿԱՄ»ՆԵՐԸ

«Ցուսաբեր» հետեւեալ խորհրդա-ծութիւնները կ'ընէ այս խորագրով խմբագրականի մը մէջ (20 Յոյ.).

— «Էնկիւրին իր երկրի քաղաքա-կանութիւնը վարելով՝ համատարած գերեզմանի վերածեց մեր հայրենիքը։

Մոսկուան իր երկրի քաղաքակա-նութեան հրահանգներուն անսալով՝ բախտախաղի դրած է այսօր ճակա-տագիրը այն կտոր մը հողին, որ մը-նացած է մեր հայրենիքէն։

Երէկ հոգիով թրքացած Հայը իր փրկութիւնը կ'ակնկալէր Պոլսոյ «հայրախնամ» կառավարութենէն։

Այսօր հոգիով ռուսացած Հայը իր փրկութիւնը կ'ակնկալէ Մոսկուայի «բարեխնամ» իշխանութենէն։

Իր դաւը դիւրութեամբ գլուխ հա-նելու համար՝ երէկ Պոլիսը կը գինէր …

«ՅԱՌԱՋ»Ի ՊԱՏՄՈՒՄՆԵՐԸ (39

# ՍՊԻՏԱԿ ԱՐԾԻՒԸ

Թարգմ. Ա. ՀԱԲԷԼԵԱՆ

Գրեց՝ ՐՕԼԸՆՏ ՏԷՆԻԷԼ

Պէտք էր պատրուակ մը գտնել… Գլխու ցաւ կամ բան մը վերջապէս։

Զարան գրեթէ անմիջապէս սրահ վերադարձաւ, այլշահր եւ սարսա-փած երեւոյթով։

Սըր Ճօն ոտքի ցատկելով գոչեց.
— Օր. Հայաթ, Տէր Աստուած, ի՞նչ պատահեցաւ։
— Սթէֆ…ը…նը …
— Վիճակը գէշցա՞ծ է։
— Ոչ, գացեր է։
— Գացե՞ր է։
— Այո Սըր Ճօն, խցիկը պարապ է։

…ղո՞ւրս ելեր է։

Աղջիկը գլխով հաստատական նշան ըրաւ։

— Բայց ինչպէ՞ս, ինչո՞ւ։

— Չեմ գիտեր թէ ինչո՞ւ, բայց գիտեմ թէ ինչպէս։ Նաւապետ Նէլըը-նը այս առտու ծովափ գացած միջո-ցին եղբայրս եւ հիւանդապահուհին հետը միասին է տարեր։ Ոհ, այս բո-լոր խորհրդաւորութիւնը ի՞նչ է, չեմ հասկնար։ Սըր Ճօն, աւելի քան երբեք հիմակ է որ ձեր օգնութեանը կը կա-րօտիմ։

…ցելուն ներս չէր բերեր։

Օգնական-ոստիկանապետ Հ. Ա. Տէյվիս ձէք Փիրսընին նայեցաւ։

— Փիրսըն, ուշացաւ այս մարդը։

— Այո պարոն, թերեւս մեր այցե-լուին հետ խնդիր մը ունեցաւ։

— Ի՞նչ խնդիր։

— Ըսել կ'ուզեմ, պարոն որ մեր այ-ցելուին միտքը փոխած կրնայ ըլլալ։ Սրօմլէնտ Եարտ եկող առաջին անձը չէ ատիկա, անոր պէս շատեր կուգան կարգ մը դէպքեր պատմելու նպատա-կով, յետոյ ետ կը վերադառնան, չը-գիտեմ թերեւս այս շէնքէն չեն ախոր-ժիր։

Փիրսըն, լաւ է որ վար երթաք ան-գամ մը եւ տեսնէք թէ ի՞նչ է պատա-հած։

— Շատ լաւ պարոն։

## Փարիզ եւ Մոսկուա համաձայնեցան

Պ. Մառշանտօ, Ֆրանսայի առեւտրական նախարարը, որ Մոսկուա գացած էր զանազան բանակցութեանց համար, Փարիզ կը վերադառնայ այսօր: Թերթերը կը գրեն թէ բանակցութիւնները յաջող ելքի յանգած են և նոր պայմանագիր մը պիտի կնքուի 1934 յունուար 11ի առժամեայ կարգադրութեան փոխարէն: Երկու կողմէն ալ միջոցներ խորհուած են, արտածումները եւ ներածումները աւելցնելու համար:

⁂ Պ. Լիթվինով հաստատելով Ֆրանսայի եւ Խ. Միութեան միջեւ գոյացած համաձայնութիւնը՝ ոչ-յարձակման դաշինքի մասին, չեշտեց թէ երկու երկիրները յարատեւօրէն կը ձգտին փոխադարձ մերձեցման եւ միջազգային գործակցութեան: Երկու պետութիւնները վճռապէս որոշած են ամէն միջոց փորձել, իրականացնելու համար արեւելեան ուխտը, որ անհրաժեշտ ազդակ մըն է Եւրոպայի խաղաղութեան համար:

## Ֆրանսա եւ Գերմանիոյ վերազինումը

Պատերազմական նախարար Զօր. Մառէն վերջին անգամ երեսփ. ժողովի զինուորական յանձնախումբին ներկայանալով, բացատրութիւններ տուաւ 800 միլիոն ֆրանքի յաւելուածական վարկի մասին: Այս գումարին 615 միլիոնը պիտի գործածուի հրետանիներու զօրացման: Այս առթիւ նախարարը դիտել տուաւ թէ մարաջախտ Փէթէնի վերջին յայտարարութենէն ի վեր, Գերմանիա արագացուցած է իր վերազինման թափը: Անհրաժեշտ է նոր միջոցներ ձեռք առնել, եթէ Ֆրանսա չուզեր ստորադաս վիճակի մը մէջ գտնուիլ: Գերմանիա այժմ ի վիճակի է 20-30 զօրաբաժին հանելու վեց օրուան մէջ, կազմ եւ պատրաստ պատերազմի համար: Եթէ նախկին զինուորներու վերստին արձանագրութեան դրութիւնը չբաւէ, հարկ պիտի ըլլայ աւելցնել զինուորութեան շրջանը, որ մէկ տարի է: Բայց որ եւ է փոփոխութիւն չպիտի ըլլայ յառաջիկայ ապրիլէն առաջ:

## Բանկալթիի գերեզմանատունը տէր չունի՞

Պոլսոյ Թուրք թերթերը կը գրեն թէ Պոլսոյ քաղաքապետութիւնը պաշտօնական գործողութեանց ձեռնարկած է, Բանկալթիի գերեզմանատան հողը իֆրազ ընելու եւ մաս մաս ծախելու համար: Այդ հողին վրայ արդիական թաղամաս մը պիտի շինուի եւ թոյլ պիտի տրուի որ եռայարկ եւ պարտէզով շէնքեր կառուցուին:

Ազգ. վարչութեան շրջանակներուն մէջ կը յայտնեն թէ կանխահաս է այս լուրը, որովհետեւ դատը դեռ չէ վերջացած եւ Պատրիարքարանի փոխանորդները արդէն իսկ վճռաբեկին դիմած են, Պոլսոյ դատարանին որոշումը բեկել տալու համար: Միւս կողմէ, դեռ ի զօրու է կանխարգել միջոցը, որով քաղաքապետութիւնը չի կրնար տիրանալ գերեզմանատան:

»»»··«««

ՆՈՐ ՄԻՋԱԴԷՊ ՄԸ ծագեցաւ Իտալիոյ եւ Հապէշիստանի միջեւ, հազիւ հարթուած նոյեմբեր 18ի դէպքը: Հեռագրի մը համաձայն, բազմաթիւ Հապէշներ գնդացիրներով յարձակած են իտալական Սոմալիէնի վրայ: Իտալացիները օդնական ուժ ստացած ըլլալով, յաջողեր են ետ մղել յարձակումը:

ՍԻԹՐՕԷՆԻ ԳՈՐԾԱՐԱՆԻՆ ՄԷՋ խլրտումներ ծագեցան ուրբաթ օր, վարչութիւնը կրճատած ըլլալով աշխատանքի օրերը: Նոր կարգադրութեան համաձայն, դեկտեմբերի ընթացքին բանուորները հազիւ 128 ժամ աշխատանք պիտի ունենան, ուրեմն պիտի կորսնցնեն իրենց վաստակին մէկ մասը:

ՏՈՒՐՔԵՐՈՒ ՑԱՒԵԼՄԱՆ ծրագիր մը ներկայացուց Սէնի նահանգապետը, 126 միլիոն ֆրանքի բաց մը ցուցնելով, իբրեւ հետեւանք տնտեսական տագնապի եւ գործազրկութեան: Միւնոյն ատեն 44 միլիոնի խնայողութիւն պիտի կատարուի եւ 55 միլիոնի փոխառութիւն մը պիտի կնքուի:

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ պատուիրակը անգլիական կառավարութեան միջոցաւ հաղորդեց թէ պիտի քաշուի նաւային ժողովէն, եթէ Ճափոն բանաւոր առաջարկ մը չներկայացնէ, Ուաշինկթընի դաշնագիրը խզելէն անմիջապէս վերջը: Անգլիա միջնորդած է, որպէսզի պայքարը աւելի չսաստկանայ:

ՆՈՐ ՄԱՔՐԱԳՈՐԾՈՒՄՆԵՐ կը կատարուին Գերմանիոյ կառավարութեան և կուսակցութեան շարքերուն մէջ: Առջի օր պաշտօնանկ եղաւ ազգ. տնտեսութեան նախարարը, Ֆէտէր, որ կուսակցութեան հիմնադիրներէն մէկն է: Քանի մը հոգի վտարուեցան կուսակցութեան շարքերէն, իսկ մէկ-երկու երաժիշտներ ալ հրաժարեցան իրենց պաշտօններէն:

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

### Փարիզ

ՓԱՐԻԶԻ «Հրազդան», «Քրիստափոր», եւ «Աղբիւր-Սերոբ» միացեալ խումբերու դասախօսութիւնը, տեղի կ'ունենայ այս երեքշաբթի, (11 դեկտեմբեր), ժամը 8.30ին, Au Clair de lune (Place d'Italie) սրճարանի վերնայարկը:

Կը խօսի՝ ԸՆԿ. Ս. ՎՐԱՑԵԱՆ:

Նիւթ՝ Պատերազմի վտանգը եւ ուժերու դասաւորումը Եւրոպայի մէջ»:

Ներկայ կրնան ըլլալ Փարիզի եւ շրջանի բոլոր ընկերները:




Imprimerie A. DER (AGOPIAN)
Le Gérant: H. STEPHAN
17, Rue Damesme, PARIS (13)

154,501,438 *տոլար: 1932 դեկտեմբերէն հաշուելով՝ անոնց անվճար պարտքերու գումարը կը հասնի* 628,964,000 *տոլարի:*

*« ՌՈՒՍԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆ » կոչուած ընկերակցութեան դէմ բողոքագիր մը ներկայացուց Խարպինի խորհրդային հիւպատոսը, զանազան դէպքեր յիշելով: Այս կազմակերպութիւնը կը գործէ պոլշեւիկներուն դէմ, եւ Լէնինկրատի վերջին աճաբեկումն ալ անոր կը վերագրուի:*

*ԱՒՍՏՐԻՈՅ ՎԱՐՉԱՊԵՏԸ եւ արտաքին նախարարը Փէշթա գացին եւ արժանացան մեծ պատիւներու: Մամուլը մեծ կարեւորութիւն կուտայ այս այցելութեան: Կը յիշուի թէ քանի մը շաբաթ առաջ ալ Հունգարիոյ վարչապետը Վիէննա գնաց:*

*ԸՆԿԵՐՎԱՐԱԿԱՆ–ՀԱՄԱՑՆԱՎԱՐ միացեալ ճակատը որոշեց մեծ միթինկներ գումարել Փարիզի եւ գաւառներու մէջ, պայքարելու համար ֆաշականութեան դէմ:*

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

***Փարիզ***

*«ՎԱՐԴԱՆ» Ենթակոմիտէի դասախօսական ժողովը այսօր Կիրակի կէսօրէ յետոյ ժամը 2.30ին* Café de la Gare*ի մէջ, Առնուվիլ: Կը հրաւիրուին մեր շրջանի բոլոր ընկերները:*

Կը խօսի ընկեր ԼԵՒՈՆ ՋՈՐՄԻՍԵԱՆ

## ԵՐԵԿՈՅԹ_ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Ֆ. Կ. Խաչի Անիէռ Պուա Քոլոնպի մասնաճիւղին կողմէ,* 22 *դեկտ. շաբաթ երեկոյ ժամը* 8.30*ին:*

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ-ԹԷՅԱՍԵՂԱՆ

*Մարսէյլի ԽԱՐԲԵՐԴԻ եւ ՅԱՐԱԿԻՑ ԳԻՒՂԵՐՈՒ ԵՐԻՏ. ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ*

Այսօր կիրակի երեկոյ ժամը *8.30*ին Սալոն ժէն ժագ. *4, rue St. Jaques.*

Ղեկավարութեամբ Պ. Մ. ԳԱԲՐԻԷԼԵԱՆի կը ներկայացուի զաւեշտ մը: Երգ, նուագ, արտասանութիւն եւայլն:

Պ. ՏԷՐՏԷՐԵԱՆ իր սիրայօժար մասնակցութիւնը կը բերէ իր *ռատիօով:*

*Մուտք՝* 3 *ֆրանք:*



## FILMS RECOMMANDÉS

***ՓԱԹԷ ՆԱԹԱՆԻ ՍԻՆԷՄԱՆԵՐԸ***

***ՑԱՑՏԱԳԻՐ** 10—20 **ԴԵԿՏԵՄԲԵՐ***

EMPIRE. 2 heures de Music-Hall et le cavalier Lafleur
MARIGNAN. Les nuits moscovites (Harry Baur, Annabella)
MARIVAUX. Tartarin de Tarascon (Raimu)
MOULIN ROUGE. L'Auberge du petit dragon (Albert Préjean)
IMPERIAL. Un homme en or (Harry Baur)
OMNIA CINE INFORMATIONS. Actualités mondiles — Les gratte-ciels de l'Arabie du sud
VICTOR HUGO. Un homme en or — Malacca
ROYAL. Mam'zelle Spahi (Noêl-Noêl)
BARBES. Chabichou (2ème époque de Sidonie panache
BELLEVILLE. Arlette et ses papas — La grande experience
CAPITOLE. Chabichou (2ème époque de Sidonie panache)
DEMOURS. Chabichou (2ème époque de Sidonie panache)
EXCELSIOR. Chabichou (2ème époque de Sidonie panache)
FEERIQUE. Sidonie panache — Grande dame d'un jour
LECOURBE. Sidonie panache (1er film) — Grande dame d'un jour
LOUXOR. Chabichou (2ème époque de Sidonie panache)
LUTETIA. L'école des contribuables — Adémaï Joseph
LYON. Chabichou (2ème époque de Sidonie panache)
MAGIQUE. Sidonie panache (1er film) — Grande dame d'un jour
MAINE. Sidonie panache (1er film) — Grande dame d'un jour
METROPOLE. Chabichou (2ème époque de Sidonie panache)
de Sidonie panache)
MONTPARNASSE. Chabichou (2ème époque de Sidonie panache)
MOZART. Chabichou (2ème époque de Sidonie panache)
PALAIS DES GLACES. Sidonie panache (1er film) — Grande dame d'un jour
PATHE ORLEANS. Sidonie panache (1er film) — Grande dame d'un jour
RECAMIER. Sidonie panache (1er film) — Grande dame d'un jour
ROCHECHOUART. Chabichou (2ème époque de Sidonie panache)
SAINT CHARLES. Sidonie panache (1er film) — Grande dame d'un jour
SAINT MARCEL. Les bleus de la marine— Sur scène: Charlotte Dauvia dans son tour de chant
SELECT. Chabichou (2ème époque de Sidonie panache)

**BANLIEUE**

ALHAMBRA D'ASNIERES. Si j'étais le patron — Les Malabares
CASINO DE CLICHY. L'Imperatrice rouge (Marlène Diétrich)
COLOMBES. Chanson de Paris — L'Ami Fritz
KURSAAL AUBERVILLIERS. Si j'étais le patron — Série 7
KURSAAL BOULOGNE. Ces messieurs de la santé — La 5ème empreinte
OLYMPIA DE CLICHY. Symphonie inachevée — Jalousie
PATHE CINEMA PALACE (Boulogne). L'Amour en cage — La grande experience

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ_ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՌՈՍՏՈՄ ԽՈՒՄԲԻՆ ԿՈՂՄԷ

Տեղի կ'ունենայ 22 Դեկտ. Շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ լոյս

**Vincennesի Salle de Fêteի ԳԵՂԵՑԻԿ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ**

**27, Rue des Laitières**

**Métro:** La Tourelle. Nationէն երկու կայարան անդին

*(Սրահը կը գտնուի՝ մէթրոյէն 50 քայլ հեռու:*

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ԿԱՐԱՊԵՏ ԲԱԳՈՍԵԱՆ
ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ՍԻՄՈՆ ՎՐԱՑԵԱՆ

Պիէսի ներկայացում՝ ***ՌՈՀ ԼԻՆԻ, ՆՈՒՀ ԼԻՆԻ***

Զաւեշտը, ընկերակցութեամբ նուագի: երկու ժամ անընդհատ ծիծաղ: կէս գիշերէն վերջ կը նուագէ MARIO DELFIի Orchestre Argentinի մէկ մասը:

*Զանազան անակնկալներ: Հայկական պարեր: Արտասանութիւն: Ճոխ պիւֆէ, անհաւատալիօրէն աժան:*

Բոլոր տոմսերը իրաւունք ունին թոմպոլայի

Մ Ո Ւ Տ Ք 6 Ֆ Ր Ա Ն Ք

## ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած՝ *Ֆ. Կ. ԽԱՉԻ ՇԱՎԻԼԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ*

Այսօր կիրակի *16* դեկտեմբեր կէս օրէ յետոյ ժամը *4—12*

Շավիլի Սէն-Լազար կայարանին մօտիկը rue Carnot փողոցին վերջաւորութեանը թիւ 28 Restaurant à l'Ecusson Bleuի սրահին մէջ

*ԱՐԱՄ ՉԱՐԸՔ* (Վ.տարանցի) *կը խօսի* Օմար Խայեամի *մասին:*

*Կ'երգէ քառեակներ՝ ընկերակցութեամբ* թառի:

Եւրոպական պարեր, ընտիր ճաշ: ճոխ եւ դիւրամատչելի պիւֆէ:

*Մուտք՝ 4 ֆրանք:*

Հաղ. միջոց.— Շոգեկառք Սէն Լազարի կայարանէն իջնել Շավիլ: Օթօպիւս թիւ *1* իջնել Puits Sans Vin, Շավիլ:

*ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ ՁԵՐ ԳՆՈՒՄՆԵՐԸ ՎԵՐԱՊԱՀԵՑԷՔ*

## ՓԱՐԻԶԻ ՖՐԱՆՍԱՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԲԱՐԵՆՊԱՏԱԿ ՄԵԾ ՎԱՃԱՌԹԻՆ

Նախագահութեամբ **ՏԻԿ. *Մ. ԲԷԳԼԱՐԵԱՆի***

ՇԱԲԱԹ 22, ԿԻՐԱԿԻ 23, ԵՐԿՈՒՇԱԲԹԻ 24, ԴԵԿՏԵՄԲԵՐ 1934
ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 2ԷՆ 7

**Foyer de la Musique Russe**ի *սրահին մէջ*

**26, Rue de Tokio, Paris (16)**

Métro: IENA, ALMA-MARCEAU Autobus: AC, AH, BU, CA N. 1, 2, 19.

*Կը վաճառուին կանացի եւ տղամարդու արդուզարդի առարկաներ, երախաներու հագուստներ, խաղալիքներ, ամէն տեսակի նուէրցու իրեր, նպարեղէն, թարմ եւ չոր պտուղներ եւայլն:*

*ԸՆԹԱՑԻԿ ԳԻՆԵՐՈՎ:* *ՃՈԽ ՊԻՒՖԷ:*

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ***ՀԱՅ ՍԱՓՐԻՉՆԵՐՈՒ*** ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

6 ՅՈՒՆՈՒԱՐ 1935 ԿԻՐԱԿԻ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 9.30ԷՆ ՄԻՆՋԵՒ ԼՈՅՍ

**Salle des Ingénieurs Civils**ի ՄԵԾ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**19, Rue Blanche,** Մէթրօ՝ **Blanche** եւ **Trinitê.**

*ՄՈՒՏՔ ԱՅՐԵՐՈՒ* 8 *ՖՐԱՆՔ, ԿԱՆԱՆՑ* 5 *ՖՐԱՆՔ:*

Տոմսերը կը ծախուին Հայ սափրիչներու մօտ եւ սովորական տեղերը:







Imprimerie A. DER (AGOPIAN)
Le Gérant: H. STEPHAN
17, Rue Damesme, PARIS (13)

Պայքար ապրուստի սղութեան դէմ անարգելի գիներով:

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

**ՍՏԱՑԱՆՔ**

ԷՔՍԻԼԻ, Թուն.— 100:
ԼԻՈՆ, Վ. Ե.— 50:
ՏԷՍԻՆ, Գործ.— 345:
ՄԻԼԱՆ, Սար.— 119 լիր. (Մ. Պ.ի միջոցաւ):
ԱՆՏԻՈՔ, Տօքթ. Գ. Շ.— 136.25:
ՊՕՐԸՓԷՐ, Հ. Աճ.— 50:
ՔԱՆ, Թուլ.— 35:
ՔԱՎԱՅԵՈՆ, Ման.— 20:
ԱՎԻՆԵՈՆ, Խ. Հ.— 35:
ՇԱԹՈՒ, Թ. Պ.— 140:
ԼԸ ՓՈՆԹԷ, Մ. Գ.— 35:
ԼԱ ՍԻՕԹԱ, Մոմ.— 108:
ՄԱՐՍԷՅԼ, Գործ.— 810:
ԱԼՖՈՐՎԻԼ, Յովհ.— 35:
ՐՕՆԻ ՍՈՒ ՊՈՒԱ, Թ. Խ.— 50:
ՄԱՐՍԷՅԼ, Պօլ.— 50:
ՊԻՒԷԼ, Տիլ.— 250:
ՏՕՄ ԼԸ ՄԵՆԻԼ, Թաղ.— 70:
ԱՆԻԷՌ, Զ. Փ.— 70:
ՌՕՄԱՆ, Ս. Պ.— 107.60:
ՄԱՐՍԷՅԼ, Ե. Փ.— 35:
ՍԷՆ ԼՈՒ, Գործ.— 290.50:
ԹՈՒԼՈՒԶ, Խաչ.— 35:




Le Gérant: H. STEPHAN
17, Rue Damesme, PARIS (13)
Imprimerie A. DER (AGOPIAN)







# ՍՊԻՏԱԿ ԱՐԾԻՒԸ

Թարգմ. Ա. ՀԱՐԵԼԵԱՆ — Գրեց՝ ՐՕԼԸՆՏ ՏԷՆԻԸԼ

— Երկու խնդիրներ ըսիր, Էտըմս, հարցուց Սըր Ճօն ծառային, ի՞նչ է միւսը. առնուազն գոնէ միւսին չափ ծանր չըլլայ:

— Կարծեմ աւելի ծանրակշիռ է պարոն:

Սըր Ճօն կանգ առաւ: Ծառային դէմքին արտայայտութիւնը զինքը վախցուց:

— Ըսէ Աստուծոյ սիրոյն:

Այսպէս կեցած տիրոջը առջեւ, Էտըմս, վերջին ծայր անհանգիստ կացութեան մէջ, խոստովանեցաւ թէ վերարկուին գրպանին մէջ գտած էր փոքր արծաթեայ Սպիտակ Արծիւը, որու մասին խօսած էր օգնական-ոստիկանապետին եւ այդ առարկան անոր յանձնած:

Սըր Ճօն այլեւս ուղեղը կորսնցուցած էր: Սքօթլէնտ Եարտի իր բարեկամը զինքը մեղսակից համարելու ապացոյց ալ ունէր: Այլեւս ստիպուած էր իր բոլոր ծրագիրները փոխել, ամէն բան խոստովանիլ Հ. Ա.-ին, եւ անոր գթութեան ապաւինիլ: Հ. Ա. գիտել պիտի տար թէ նախ իրեն դիմած չէր եւ ատոր համար հետը շատ կոշտ պիտի վարուէր: Ինք եւ Հ. Ա. հինաւուրց բարեկամներ եղած էին եւ անշուշտ ան պիտի ըսէր, — Ճօն, ինչո՞ւ ինծի չեկար, գոնէ հին բարեկամիդ վրայ վստահութիւն ունենալու էիր: Տէր Աստուած, ինչ ոխմար եղած էր եւ այդ Սպիտակ Արծիւը գրպանը պահած: Մտքովը կը պատկերացնէր Հ. Ա.-ին դէպքերը դասաւորելու եղանակը, թէ ինչպէս Սքօթլէնտ Եարտ մեկուսարանին պիտի սկսէր հարցաքննութեան: Իր տրամադրութեան տակ ունեցած միջոցներուն շնորհիւ շատ շուտով պիտի իմանար Սըր Ճօնին, այդ անծանօթ նաւաղին հետ ուր երթալը: Պիտի իմանար Կլօրիայի մասին, շատ հաւանաբար վիրաւոր Սթէֆըն Հայթի մասին ալ. ասոնք ամէնքը իրար պիտի միացնէ եւ պիտի սկսի գործի: Հակառակ իրենց բարեկամութեան պիտի գործէր, Հ. Ա. այդպէս էր... իր պարտականութեան առջեւ ոչ մէկ խոչընդոտ: Ուրեմն այլեւս պարզուած էր թէ ինչու փլմութ գացեր էր:

Ուրիշ խնդիր մըն ալ կար, Էտըմսն ալ կասկածած պիտի ըլլայ, ան իր մտքով պիտի մտածէր թէ իր տէրը մարդասպանի մը կողմէ որպէս խորհրդաւոր գործածուած առարկայ մը երկե՞ց ձեռք ձգած էր: Սըր Ճօն ինքն ալ մտածեց որ իր վարուելակերպը իր դէմ տեսակ մը խորհրդաւորութիւն ստեղծած էր:

Այլեւս ստիպուած էր ամէն բան պարզել ու բացատրել, մինչեւ իսկ իր ծառաներուն:

— Էտըմս, այդ խնդրի մասին վերջը կը խօսինք, ներկայիս Օր. Հայաթին հետ տեսնուիլ կ'ուզեմ, ըսաւ.

— Շատ լաւ պարոն: Կը կարծեմ որ ես սխալ մը չեմ գործած պարոն, կը վստահեցնեմ ձեզ թէ ինչ որ ըրի ձեր աղէկութիւնը խորհելուս համար ըրի:

— Այդպէս ըլլալուն կը հաւատամ Էտըմս, թէեւ չեմ կրնար ըսել որ ուզածիս պէս շարժած ես, բայց եղածը եղած է այլեւս: Կասկած չունիմ թէ ըրածներդ բոլորն ալ իմ շահուս համար եղած են: Դարձեալ կը կրկնեմ, այդ խնդրի մասին յետոյ կը խօսինք: Հիմակ խնդրեմ, գնա ըսէ Օր. Հայաթին որ վար գայ եւ զիս տեսնէ:

— Շատ լաւ Պարոն:

Էտըմս գլխիկոր սենեակէն դուրս ելաւ: Խոստովանած էր եւ միտքը հանդարտած, բայց զգաց որ իր տիրոջը մեծ վնաս մըն էր հասցուցած: Չէր գիտեր թէ այս խորհրդաւորութեան պատճառն ինչ էր, եւ շատ ալ չմտածեց այդ մասին. իր միակ ցաւը այն էր որ, Սըր Ճօն Տէվիսընի պէս ազնիւ տէր մը իր ստախօսութեան պատճառով նեղ կացութեան մը մատնուած էր:

Էտըմսը դուռը փակելէն վերջ, Սըր Ճօն սենեակին մէջ սկսաւ քալել: Տէր Աստուած, ինչ տակնուվրայութիւն էր ստեղծուած, ինչպէ՞ս պիտի կարենար կարգադրել այդ խնդիրները:

Ջարան վայրկեանէ մը վար պիտի գար եւ զայն պիտի դիմաւորէր ամենաանհաճոյ պատմութիւնով մը: Չէր գիտեր ինչպէս սկսիլ: Աշխատած էր զայն Լոնտոն բերել իբր թէ եղբայրը գտնելու յոյսով, մինչդեռ իրականին մէջ զինքը Կլօրիայէն դուրս հանելու համար էր որ հոս բերած էր: Սքօթլէնտ Եարտէն վերադառնալու միջոցին մտադրած էր իրեն առաջարկել, հիմակ ընէ՞ր թէ ոչ, աղջիկը իր առաջարկը տեսակ մը ծուղակ չպիտի՞ համարէր: Կարելի է, բայց ինք այդ տեսակ նպատակ չունէր:

Սենեակին մէջ կեցաւ, երկվայրկեանները կ'անցնէին, Ջարան սենեակ մտնելէն առաջ պէտք է որոշում մը յանգէր: Անհասարակ որ եւ է խնդրի մէջ իր որոշումը շուտ կուտար, ատե՞ն Ջառային հետ առաջին անգամ տեսնուելէն ի վեր փոխուած էր: Հետեւելու միջոց չունէր այլեւս... առաջին առթիւ պէ՞տք է հարցնէր թէ իր կինը կ'ըլլայ, թէ նախ ամէն բան պատմէր եւ յետոյ հարցնէր:

Դարձեալ սկսաւ քալել, ինչո՞ւ միտքը չէր կրնար ամփոփել: Կը վախնա՞ր, այո, կը վախնար որ անոր պատասխանը ժխտական կ'ըլլայ: Սակայն նաւապետ Նէլըըն ըսած էր.— Գետինն անցնի նաւապետ Նէլըընը, ինքը անձնապէս պէտք է ճշդէ այդ պարագան: Նախ անոր ձեռքը պիտի խնդրէ, յետոյ պիտի պատմէ պատմութիւնը:

Սենեակին դուռը բացուելով Ջարա Հայաթ ներս մտաւ:

— Կը փափաքի՞ք զի՞ս տեսնել, Սըր Ճօն: Եղբօրս մասին արդէն լո՞ւր մը ունի՞ք:

Սըր Ճօն գլուխը շարժեց:

— Ոչ օրիորդ Հայաթ, կը ցաւիմ ըսելու որ ձեր եղբօր մասին լուր չունիմ:

Աղջիկը զարմացումով անոր նայեցաւ, յետոյ ցաւագին արտայայտութիւն մը առնելով ըսաւ.

— Ձեր յուսացածէն աւելի կանուխ վերադարձաք, արդեօք Սթէֆըն Լոնտոն չէ՞ եկած:

— Ձեր եղբօր ուր գտնուելուն մասին գաղափար չունիմ, Օր. Հայաթ, անոր համար չէր որ ձեզ տեսնել ուզեցի... չէ՞ք նստիր:

Դէմքին ցաւագին արտայայտութիւնը տակաւին կը մնար, բայց բազկաթոռի մը վրայ նստաւ: Սըր Ճօն ուրիշ աթոռ մը առնելով աղջկան դիմացը նստաւ:

— Օր. Հայաթ քիչ առաջ ձեզմէ բաժնուելէս վերջը, վայրկենական որոշում մը յանգեցայ:

— Այո՞:

(Տար.)

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

### *Փարիզ*

*ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻ ժողովը այսօր, Հինգշաբթի, ժամը 8.30ին* Café Voltaire *սրճարանը, Օտէոն Թատրոնի դիմաց:*

*ՌՈՍՏՈՄ խումբի ժողովը այս Հինգշ. երեկոյ ժամը 8.30ին* 131, Fbg. du Temple: *Կարեւոր օրակարգ:*

### *Գաւառ*

*ԼԻՈՆԻ «Վարանդեան» կոմիտէն դասախօսական ժողովի կը հրաւիրէ ընկերներն ու համակիրները, 20 դեկտեմբեր, հինգշաբթի երեկոյ, ժամը 8.30ին, Գ. Թաղապետարանի գրադարանը, մուտք* Rue François Garcin, *կը խօսի Ընկ. Ա. ԱՐԾՐՈՒՆԻ:*

*ԼԻՈՆԻ «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, 21 Դեկտեմբեր, Ուրբաթ երեկոյ, ժամը 8.30ին, Զարդարեան գրադարանը,* 181 Cours Lafayette. *Ներկայ պիտի ըլլայ Ընկ. Ա. ԱՐԾՐՈՒՆԻ:*

## ՏԱՐԵԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած Հ. Կ. Խ.-ի Մարսէյլի մասնաճիւղին կողմէ, 22 դեկտեմբեր, Շաբաթ գիշեր, ժամը 9էն մինչեւ լոյս:* 21, Boulevard Dugommier, Colisée*ի շքեղ սրահներուն մէջ:*

Բարեհաճ մասնակցութեամբ

*Տիկին ՏՈՔ. ՄՕՐԷՆՕՒ եւ ՕՐ. ՄԱՆՈՒՇ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆԻ*

Բացման խօսք՝ *Տիկին ՔԻՊՐԻԹՃԵԱՆ*

Պ. Պ. Ս. Չէօրէքճեան (ջութակ), Ժագ Կիւլպէնկեան (ջութակ), Վ. Տ. Վարդանեան (արտասանութիւն), Lydia Walter (ռուսական պար):

Հայկական եւ սպանիական պարեր Հայ Սրենուշներու կողմէ:

Կը ներկայացուի զաւեշտ մը: Եւրոպ. պարեր: Դիւրամատչելի պիւֆէ:

Մուտք *10* եւ 7.50 ֆրանք





«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (50)

# ՍՊԻՏԱԿ ԱՐՈՒՐԸ

Թարգմ. Ա. ՀԱՔՊԷԼԵԱՆ — Գրեց՝ ՐՕԼԸՆՏ ՏԷՆԻԸԼ

*— Ձեր եղբօրը խնդրին սկսելէ առաջ բան մըն այ որ պէտք է ըսեմ ձեզ:*

*Սկսելու այս ձեւը սխալ թուեցաւ իրեն, աղջկան համար ալ նոյնը եղած պէտք է ըլլայ, որովհետեւ արտեւանունքը զարմացումով տնկեց:*

*— Բան մը որ պէտք է ինծի ըսէ՞ք: Սըր Ճօն ձեզ շատ չեմ հասկնար:*

*Պէտք էր նորէն սկսիլ եւ նոր ոճով:*

*— Միտքիս մէջինը ձեզի ըսելու համար քիչ մը դժուարութիւն կը կրեմ, Օր. Հայլթ: Մինչեւ հիմակ որ եւ է կնոջ չեմ փորձած ըսել թէ որքան կը հիանամ իր վրայ:*

*Զարա Հայլթ չպատասխանեց: Վայրկենաբար զալիքը գուշակեց, ու թէեւ սրտանց կ'ուզէր որ ամէն բան ըսէր՝ բայց կնոջական քմահաճոյքը իրեն փոխադարձ ըսել տուաւ.*

*— Վստահաբար Սըր Ճօն կարեւոր ճամբորդութենէ մը չվերադարձաք, պարզապէս ինծի գալու եւ ըսելու թէ վրաս որքան կը հիանաք:*

*Այս բառերը ըսած միջոցին կը խնդար. բայց իր աչքերուն եւեւ, ուր ան չէր կրնար տեսնել՝ արցունք կար, ուրախութեան արցունք, որովհետեւ ինքն ալ, մարդուն պէս առաջին իսկ տեսութեան՝ սիրահարած էր:*

*Սըր Ճօն անոր ժպիտը միայն իմացաւ, չէր կրնար տեսնել աղջկան սիրտը: Բժիշկը մատներովը սկսաւ աթոռը հարուածել:*

*— Իմ հիացումս ձեզի համար թերեւս շատ քիչ կամ ոչինչ կ'արժէ...*

*— Ոհ, ոչ, ոչ, չեմ ուզեր որ այդպէս մտածէք: Կը կարծեմ թէ իմ վրայ հիանալով ինծի մեծ պատիւ մը բրած կ'ըլլաք. այսինքն... եթէ այդպէս է:*

*— Այդպէս է: Ես... եւ քարացած մնաց:*

*— Այո՞:*

*— Հիացումէս աւելի բան մը կ'զգամ ձեզ հանդէպ. աւելցուց:*

*— Օ՛հ:*

*Վստահ չէր թէ իր խօսելու եղանակը հաճո՞յք թէ դժգոհութիւն կը յայտնէր: Այն ատեններն ջղայնացած վիճակի մէջ էր:*

*— Հարկաւ գուշակեցիք թէ ինչու համար համաձայնեցայ նաւապետ Նէլսընին հետ գալ.— որովհետեւ անիկա ձեր լուսանկարը ցոյց տուած էր ինծի: Ոեճընտ փողոցի մեր առաջին հանդիպումէն ի վեր ձեր դէմքը չաքունակ աչքիս առջեւ ունիմ: Եթէ եւ տեւէս մարդ գրկած չըլլայիք, ձեզ թերթերու միջոցով պիտի փնտռէի... Անիկա ձեզի շատ հասարակ կը հնչէ՞:*

(Շար.)







*Ֆ. Կ. ԽԱՉԻ Նիսի մասնաճիւղի ժողովը, 22 դեկտեմբեր, Շաբաթ իրիկուն, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:*

### Վաճառ է

Anvers *եւ* Barbes *մէթրոյին մօտ կահաւորուած սենեակ մը պարտէզի կամ փողոցի վրայ այր մարդու համար: Հեռաձայն կայ եւ ի հարկին ճաշն ալ միասին:*

*Տեղեկութեան համար դիմել՝ «Յառաջ»ի վարչութեան:*

երեք խենդեր ապուր կ'եփէին, խոշոր կաթսայի մը առջեւ, երբ վրայ հասաւ բժիշկը: Երեք խենթերը որոշեցին բժիշկը նետել կաթսային մէջ եւ... միսով եփել ապուրը: Անմիջապէս կաչկանդեցին զոհը: Բժիշկը կռահելով գլխուն գալիքը, սկսաւ... բանակցիլ խենդերուն հետ:

— Այո, տղաք, շատ լաւ մտածեր էք. բայց որպէսզի ապուրը համով ըլլայ, պէտք է որ զգեստներս եւ կօշիկներս հանեմ:

Խենդերը կը խորհրդակցին եւ բժիշկին առաջարկը բանաւոր գտնելով, կը սկսին քակել կապանքները: Ցիմարարոյժը հազիւ ազատուած, վարպետ շարժումով մը ինքզինքը պատուհանէն վար կը նետէ եւ կը փրկուի:

ՃԱՆԱՃԱՆ ԼՈՒՐԵՐ՝ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ՀԱՅԻՆ ԳԻՆԸ հաւանաբար 20 սանթիմ զեղչուի քանի մը օրէն, իբրեւ արդիւնք ցորենի վաճառման նոր օրէնքին որ քուէարկուեցաւ խորհրդարանին կողմէ:*

*ՊԵԼԿՐԱՏԻ ՍԱՓՐԻՉՆԵՐԸ բողոքագիր մը ուղղելով կառավարութեան, պահանջեցին սահմանափակել մեքենական ածելիներու ներածումը, որպէսզի չզրկուին իրենց արհեստէն:*

*ԱՅՆ ՄԵՔԵՆԱԳԻՐ ԹՐՔՈՒՀԻՆԵՐԸ որ կ'աշխատին հանրային հաստատութեանց եւ դրամատուններու մէջ, պարտաւոր են մասնաւոր համազգեստ մը հագնիլ աշխատանքի պահուն:*

*ԱԴԱՄԱՆԴԻ ՆԵՐԱԾՈՒՄԸ արգիլուեցաւ Իտալիոյ մէջ, մասնաւոր հրամանագրով մը: Կառավարութիւնը կը շարունակէ միջոցներ ձեռք առնել, լիրին գինը պահելու համար:*

*ՕԴԱՆԱՒՈՐԴ Տէլմօթ երեքշաբթի օր թռիչք մը կատարելով Իսթրի վրայ, կոտրեց արագութեան մրցանիշը,— միջին հաշուով ժամը* 502 *քիլոմեթր* 465: 1933 *սեպտեմբերէն ի վեր արագութեան մրցանիշը կը պատկանէր ամերիկացի օդանաւորդ Ճէյմս Ուէտէլի, որ կտրած էր ժամը* 490 *քիլ.* 800:

*ԻՏԱԼԱԿԱՆ կառավարութիւնը կը հերքէ այն զրոյցները թէ իտալացի զինուորներ կը յառաջանան Հապէշիստանի մէջ: Երկու կառավարութիւնները կը շարունակեն բողոքներ տեղացնել Ազգերու Դաշնակցութեան գրասենեակը:*

# Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

## Փարիզ

*ԱՆԻԻ-Պուա-Քոլոմպի Արամ խումբի ժողովը այսօր, Հինգշաբթի երեկոյ ժամը 9ին Պէքոնի կայարանին դիմացի սրճարանը:*

## Գաւառ

*ՓՐԻՎԱՅԻ եւ արուարձաններու «Յառաջ» խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին այս Շաբաթ կէս օրէ վերջ, Շալամոնի մէջ: Ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:*

*ՍԷՆ-ՇԱՄՈՆԻ Վարուժան խումբին ժողովը վաղը, Ուրբաթ երեկոյ ժամը 8ին սովորական տեղը:*

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԵՐԵԿՈՅ

# ՆՈՐ ՏԱՐԻԻ ԱՌԹԻՒ

**1934 ԴԵԿՏԵՄԲԵՐ 31 ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, ԺԱՄԸ 9ԷՆ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ**

կազմակերպուած՝ *ՖՐ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ*

Salle des Conférences*ի մէջ*, 7, Rue de Tretaigne, *Փարիզ* (18), *մէթրօ*՝ J. Joffrin

Կաղանդի սեղան կէս գիշերէն վերջ

Հայկական խնջոյք — հայկական ուրախութիւն, զանազան նուագարաններով (Դաշնակ, թառ եւայլն): Այս բոլոր վայելքը՝ միայն **15** ֆր. մուտքով

*Կը խնդրուի նախօրօք արձանագրուիլ, դիմել* Օր. Պետրոսեանի, 6, Rue **Tretaigne, Paris (18), Հեռաձայն Montmartre 13-09:**

# ԵՐԵԿՈՅԹ – ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*ՖՐ. Կ. ԽԱՉԻ ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ*

29 դեկտեմբեր Շաբաթ երեկոյ ժամը *8.30*էն մինչեւ լոյս

Փանօրամայի սրահին մէջ 2, rue Alexandre Guilmant. Մեթրօն:

(Մէթրօն.— Մօնփարնասի կայարանին մօտ)

Կը խօսի Պ. ՍԵԴՐԱԿ ՍԱՍՈՒՆԻ

կը ներկայացուի *ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐԸ*

խմբերգ, մեներգ, արտասանութիւն անդամուհիներու կողմէ:

Կը նուագէ ԵՓՐԱՏ նուագախումբը: Ճոխ պիւֆէ:

Հաղորդ. միջոց.— *Առնել 23 կամ 32 թիւ հանրակառքերը եւ իջնել լա Ֆէրմ տը Մուլինօ:*

Մուտք՝ 5 ֆրանք:

## ՕՐԱՑՈՅՑ

## ՄԱՐՍԻԼԻՈՅ ՆՈՐԸՆՏԻՐ ԱՌԱՋՆՈՐԴ

**ԳԵՐ. Տ. ԳԱՐԱԳԻՆ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱՄԵՆԱՎԵՐՋԻՆ ՆԿԱՐՈՎԸ ԼՈՅՍ ՏԵՍԱՒ ԽԻՍՏ ԳԵՂԵՑԻԿ *ՊԱՏԻ ՕՐԱՑՈՅՑ***

**Գին՝ 5 ֆրանք:**

***ԾԱԽՈՒ Է.— Առաջնորդարան, 3, րիւ վանթիւր, եւ բոլոր եկեղեցիներու մէջ ի նպաստ Աղքատախնամի:***

կը գտնուի նաեւ ֆետեւեալ վայրերը:

***Գրատուն Յառաջ***, րիւ Յօմինիքէն.— ***Նպարավաճառ Սօլաքեան, 29***, պէրնար տիւ Պուա.— ***Նպարավաճառ Փափազեան, 11***, րիւ Պօնէթրբի (իտալական Պազար).— ***Դերձակատուն Ալեքսանդր, 315***, րիւ տը Լիօն.— ***Նպարավաճառ Աստուրեան***, Լէզօլիվ (Մարթէկօ):

# ԹԱՏԵՐԱԿԱՆ ԱՆՆԱԽԸՆԹԱՑ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ՝ Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ԵՒ ՇՐՋԱՆԻ ՔՈՅՐ ԿՈՄԻՏԷՆԵՐՈՒ

13 ՅՈՒՆՈՒԱՐ 1935 ԿԻՐԱԿԻ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 8.30ԻՆ

ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԸ ԿԸ ՎԵՐՋԱՆԱՅ ԺԱՄԸ *11.30*ին

**Salle des Sociétés Savantes***ի մէջ* **8, Rue Danton**

**Métro: Odéon եւ Saint Michel**

## ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ ՎԵՐԱԾՆՈՒՆԴ

(ԿԱՐԷՆ ՎԱՐԴԱՆԵԱՆԻ, Հայաստանի կեանքէն)

Կը մասնակցին Տիկիններ *Գայեանէ, Լաթիֆեան, Քնար, Օր. Հախփիկ:*

Պարոններ՝ *Գմբէթեան, Գարեգին, Թորոսեան, Կոթիկեան, Լաթիֆեան, Ուզունեան, Ռուբէն, Սանճագ եւ Տէրվիշեան:*

Բեմադիր՝ *Ս. ԹՈՐՈՍԵԱՆ*

*ՏՈՄՍԵՐՈՒ ԳԻՆԵՐ*՝ 5, 7.50, 10 եւ 15 *ՖՐԱՆՔ:*

Տոմսերը կը ծախուին՝ ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ Գրատունը 51, Rue Mr. le Prince (Paris 5), ինչպէս նաեւ սրուարձաններու մէջ:

## ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*ՓԱՐԻԶԻ Սալնոյ Ջորի Հայրենակցական Միութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ հայրենակից Յակոբ Մարգարեանի, իր 13 տարեկան անդրանիկ որդւոյն Արսէնի եղերական մահուան առթիւ:*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ Շավիլի մասնաճիւղի անդամ-անդամուհիներն կը հրաւիրուին առաջին ընդհ. ժողովին, որ տեղի կ'ունենայ 29 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, Մատուռ-Մանկապարտէզի սրահին մէջ,* 4, rue Trois Chantiers. *Օրակարգ՝ հաշուետուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն:*

*Ներկաներուն թիւը մեծամասնութիւն պիտի համարուի:*

# ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

*ՍԵՒՐԱՆԻ ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՆՈՐԱՇԷՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

30 *Դեկտեմբեր կիրակի, կէս օրէ վերջ ժամը 3ին*

**ՍԻՓԱՆ** երգչախումբը ղեկավարութեամբ ՍԱՔՕ ՅԱԿՈԲԵԱՆԻ

կը ներկայացնէ ՅՈՎՀ. ԹՈՒՄԱՆԵԱՆԻ «ԱՆՈՒՇ»ը

Այնքան սիրուած եւ ժողովրդական ացուծ խմբերգներով, մեներգներով եւ ճայկական շուրջպարերով:

Մանրամասնութիւնները յայտագրով:

Արդիւնքի մէկ մասը կրթասիրացին: Մուտք՝ 5 ֆրանք:

ՀԱՂ. ՄԻՋ.— Շոգեկառք Gare du Nordէն ժամը *13.50, 14.35* եւ *14.45*:

# ԵՐԵԿՈՅԹ–ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ ՀՕՄԻ ՆԱԽԿԻՆ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԵԱՆ*

ԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ 29 ԴԵԿՏԵՄԲԵՐ ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ

**Salle des Ingéniurs Civils**ի ընդարձակ սրահներուն մէջ

**19 Rue Blanche** Մէթրօ՝ **Trinité**

*կը ներկայացուի ՍԱՄՈՒԷԼ (դրամ 5 արար*

(Հեղինակ՝ Միութեանս անդամներէն Պ. Վահան Թահմազեան)

Մասնակցութեամբ Ա. ԳՄԲԷԹԵԱՆԻ եւ Միութեանս անդամներու: Կէս գիշերէն վերջ եւրոպական պարեր: Առաջնակարգ Orchestre Jazz-Tango, ՄԻՇԷԼ ՍԱՀԱԿԵԱՆԻ: Ճոխ եւ դիւրամատչելի պիւֆէ:

Մուտք այրերու՝ 10 ֆրանք, իսկ կիներու՝ 7.50:



Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13)

*տատուին Ալպանիոյ մէջ։ Պելկրատի եւ Հռոմի ալպանական դեսպանատուն–ները անմիջապէս հերքեցին այս լուրերը, յունական չարամտութեան վերագրելով զանոնք, բայց բուն մայրաքաղաքէն հերքում չէ հասած ոչ Լոնտոն, ոչ ալ Փարիզ։*

»»»··«««

*ՀԱՑԻՆ ԳԻՆԸ զեղչելու համար խորհրդակցութիւնները կը շարունակուին ձեռնհաս իշխանութեան եւ փռապաններուն միջեւ։ Զեղչը կը նախատեսուի մինչեւ 20—30 սանթիմ իւրաքանչիւր քիլոյին։*

*ԱՀՌԵԼԻ ԹԱԹԱՌ մը մեծ վնասներ պատճառեց Քանտիայի մէջ (Կրետէ)։ Կ'ըսուի թէ հինգ հոգի մեռած եւ հարիւրի չափ տուներ կործանած են։*

*ՀՐԴԵՀ ԾԱԳԵՑԱՒ ՍԱՄՍՈՆԻ մէջ, դեկտեմբեր 26ին, մոխիրի վերածելով 15 տուներ։ Բուռն հով մը կը փչէր, եւ կրակը կը սպառնար կործանել ամբողջ թաղեր, բայց կարելի եղաւ առաջքը առնել։*

*ՆԱԽԿԻՆ ՎԱՐԶԱՊԵՏ Պ. Փօլ Պօնքուռ Մարսէյլ գնաց, Աղէքսանդր Թագաւորին սպանութեան թղթածրարը ուսումնասիրելու համար, իբրեւ փաստաբանը Մարիա Թագուհիին։*

*ՊԱՂԵՍՏԻՆԻ ՄԷՋ ՀՈՂ գնելու համար տասը հազար անգլ. ոսկի նուիրեց անծանօթ մը, Հրէական Ազգային հիմնադրամին։*

---

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

### Փարիզ

*«ԱՐԾԻԻ» Ենթակոմիտէութեան դասախօսական ժողովը տեղի կ'ունենայ վաղը Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, 17, rue Ampère։ Քաջուն։*

### Գաւառ

*ՓՐԻՎԱՅԻ եւ արուարձաններու «Ցառաջ» խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին վաղը Շաբաթ կէս օրէ վերջ, Շալամոնի մէջ։ Ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։*

*ՍԷՆ-ՇԱՄՈՆԻ Վարուժան խումբին ժողովը այսօր Ուրբաթ երեկոյ ժամը 8ին սովորական տեղը։*

*ՄԱՐՍԷՅԼԻ Պատանեկան Միութեան ընդհ. ժողովը այս Կիրակի կէս օրէ ետք ժամը 3ին Ընթերցարանի սրահին մէջ։ Կարեւոր օրակարգ։*

---



---

## ՑՈՒՑԱՏԵՍ

*ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ Շավիլի մասնաճիւղի անդամ - անդամուհիներն կը հրաւիրուին առաջին ընդհ. ժողովին, որ տեղի կ'ունենայ 29 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Մատու - Մանկապարտէզի սրահին մէջ,* 4, rue Trois Champtier *Օրակարգ՝ հաշուետուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն։*

*Ներկաներուն թիւը մեծամասնութիւն պիտի համարուի։*

---



---


**Le Gérant: H. STEPHAN**

**Imprimerie A. DER (AGOPIAN)**

**17, Rue Damesme, PARIS (13)**

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ – ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

**Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՏԷՄԻՆԻ ԿՈՄԻՏԷԻՆ ԿՈՂՄԷ**

*Այսօր կիրակի երեկոյ ժամը 8էն մինչեւ առաւօտեան 1 Հ.Յ.Դ. ՏԱՆ մէջ*

Թանկօի մրցում, ճազ (*Ժիրարտի Եղբայրները*)։

Հաճելի անակնկալներ։ ձոխ եւ դիւրամատչելի պիւֆէ։

*Սրահին ջերմութիւնը ապահովուած։*

Մուտք՝ այրերու 2 ֆրանք, կիներու 1 ֆրանք։

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

***ՍԵՒՐԱՆԻ ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՆՈՐԱՇԷՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ***

*Այսօր, կիրակի, կէս օրէ վերջ ժամը 3ին* 52, Rue Bourgogne

**ՍԻՓԱՆ** երգչախումբը ղեկավարութեամբ **ՍԱՔՕ ՅԱԿՈԲԵԱՆԻ** կը ներկայացնէ ՅՈՎ.Հ. ԹՈՒՄԱՆԵԱՆԻ **«ԱՆՈՒՇ»**ը

Այնքան սիրուած եւ ժողովրդականացած խմբերգներով, մեներգներով եւ ճայկական շուրջպարերով։

Մանրամասնութիւնները յայտագրով։

Արդիւնքին մէկ մասը կրթասիրացին։ Մուտք՝ *5* ֆրանք։

ՃԱՄ. ՄԻՋ.— Շոգեկառք Gare du Nordէն ժամը *13.50*, եւ *14.35*։

## ՏՕՆԱԾԱՌ ՎԷՆՍԷՆԻ ՄԷՋ

կազմակերպուած Վէնէնի Հայ Կրթասիրաց երկսեռ միութեան կողմէ

31 *Դեկտեմբեր, Երկուշաբթի երեկոյ, ժամը 9էն մինչեւ առաւօտ*, 8, AVE. DE PARIS*ի մեծ սրահին մէջ*։

*Ճոխ յայտագիր, բանախօսութիւն, մանուկներու կողմէ երգեր, արտասանութիւններ, կաղանդ պապայ եւ հաճելի անակնկալներ։*

*Եւրոպական պարերը կը սկսին կէս գիշերէն մինչեւ առաւօտ։*

Ընտիր ճազ — Մուտքը ազատ է

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

**ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ *ՀԱՅ ՍԱՓՐԻՉՆԵՐՈՒ* ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ**

**6 ՅՈՒՆՈՒԱՐ 1935 ԿԻՐԱԿԻ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 9.30ԷՆ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ**

**Salle des Ingénieurs Civils**ի ՄԵԾ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**19, Rue Blanche,** Մէթրօ՝ **Blanche** եւ **Trinité.**

*Կը ներկայացուի հայ սափրիչ–սափրիչուհիներու կողմէ պատրաստուած կանանց մազերու ամենավերջին նորաձեւութիւնները, ֆրանսական և հայկական թերթերու թղթակիցներու ներկայութեամբ։*

Պիտի բաշխուի ԳՕԹԻՑՕՆ եւ զանազան անուշաճաշութիւններ։

*Ընտիր ճազ եւ օրքէսթր (14 հոգիէ բաղկացեալ)։*

*Մուտք այրերու՝* 8 *ֆրանք, կիներու* 5 *ֆրանք։*

Տոմսերը կը ծախուին հայ սափրիչներու մօտ եւ սովորական տեղերը

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

Առնուվիլի Արարատ միութեան կողմէ

Այսօր կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2.30ին Salle Gallmandի մէջ

գեղարուեստական բաժին՝ մանկապարտէզի փոքրիկներու եւ վարժարանի աշակերտներու կողմէ։

Ֆր. կ. խաչի տեղւոյս մասնաճիւղը սարքած է կաղանդի ծառ եւ պիտի բաշխէ փոքրիկներուն։

Երկու ներկայացում։ Նուագախումբ եւ երգչախումբ ղեկավարութեամբ գ. վ. Էլմաճեանի։




Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme, PARIS (13)




## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԵՐԵԿՈՅ

# ՆՈՐ ՏԱՐԻԻ ԱՌԹԻՒ

**1934 ԴԵԿՏԵՄԲԵՐ 31 ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, ԺԱՄԸ 9ԷՆ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ**

կազմակերպուած՝ *ՖՐ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ*

Salle des Conférences*ի մէջ*, 7, Rue de Tretaigne, *Փարիզ* (18), *մէթրօ՝* J. Joffrin

Կաղանդի սեղան կէս գիշերէն վերջ

Հայկական խնջոյք – հայկական ուրախութիւն, զանազան նուագարաններով (Դաշնակ, թառ եւայլն)։ Այս բոլոր վայելքը՝ միայն 15 ֆր. մուտքով

*Կը խնդրուի նախօրօք արձանագրուիլ, դիմել* Օր. Պետրոսեանի, 6. Rue **Tretaigne, Paris (18),** Հեռաձայն **Montmartre 13-09:**



## FILMS RECOMMANDÉS

*ՓԱԹԷ - ՆԱԹԱՆԻ ՍԻՆԷՄԱՆԵՐԸ*

*ՅԱՅՏԱԳԻՐ* դեկտ. 28էն 3 յունուար

EMPIRE. L'Aventurier (Victor Francen) — Sur scène: Lys Gauty et 8 Attractions
MARIGNAN. Le voyage imprévu (Betty Stockfeld, Roger Tréville)
MARIVAUX. Le bossu ou Le Petit Parisien
MOULIN ROUGE. Zouzou (Joséphine Baker, Jean Gabin)
IMPERIAL. L'Auberge du petit dragon (Albert Préjean)
OMNIA CINE INFORMATIONS. Actualités mondiales — Isola di Capri
VICTOR HUGO. L'Aristo (André Lefaur)
ROYAL. Derniere heure — Complet des courses
BARBES. Le petit Jacques (Constant Rému)
BELLEVILLE. Une femme chipée — Vacances coujugales
CAPITOLE. Le prince de minuit — Hôtel Atlantic
DEMOURS. L'Auberge du petit dragon (Albert Préjean)
EXCELSIOR. Le prince de minuit — Hôtel Atlantic
FEERIQUE. Une femme chipée — Maitre chez soi
LECOURBE. Une femme chipée — Gonzague
LOUXOR. Le prince de minuit — Hôtel Atlantic
LUTETIA. L'Auberge du petit dragon (Albert Préjean)
LYON. Le prince de minuit — Sur scène: Prior et ses joyeux provençaux
MAGIQUE. Une femme chipée—Gonzague
MAINE. Une femme chipée — Martini sec
METROPOLE. Le prince de minuit —Hôtel Atlantic
MONTPARNASSE. Le prince de minuit—Hôtel Atlantic
MOZART. Un homme en or (Harry Baur) — La crémaillière
PALAIS DES GLACES. Une femme chipée — Vacances conjugales
PATHE ORLEANS. Une femme chipée — Sur scène: Geo Dorliss parodiste excentric
RECAMIER. Une femme chipée—La faune sous marine
ROCHECHOUART. Le petit Jacques (Constant Rému)
SAINT MARCEL. Un homme en or — Sur scène: le chanteur Jean Lumiere dans ses créations
SELECT. Un homme en or — La crémaillière
SAINT CHARLES. Une femme chipée — Et avec ça papa

**BANLIEUE**

ALHAMBRA D'ASNIERES. Chabichou (2ème film de Sidonie panache
CASINO DE CLICHY. N'aimer que toi — Malacca
COLOMBES. Le prince de minuit — Sur scène: le chanteur fantaisiste Perchicot
KURSAAL AUBERVILLIERS. Chabichou (2ème film de Sidonie panache
KURSAAL BOULOGNE. Les bleus de la marine — La faune sous marine
OLYMPIA DE CLICHY. Le prince de minuit — Hôtel Atlantic
PATHE CINEMA PALACE (Boulogne). Le prince de minuit — Hôtel Atlantic